## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78*

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 11
ՀՈՒՆԻՍ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


### ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՆ ՈՒ ԽՈՐՀՐԴԱՏՈՒՆ

*Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի քիմիական ցեխի ագիտատոր Ա. Ասլանյանը բանվորների իսկական սրտակից ընկերն է, բարեկամն ու խորհրդատուն։ Նրա սրտաբուխ ու բովանդակալից զրույցները թափանցում են մարդկանց սրտերում և գիտակցության մեջ, նա սերտորեն կապված է բանվորների հետ, լավ գիտե, թե նրանցից յուրաքանչյուրին աշխատանքում ու կենցաղում ի՞նչ հարցեր են հուզում, ինչո՞վ կարելի է օգնել նրանց։ Եվ հենց այդ է պատճառը, որ ցեխի աշխատողները նրան դիմում են ամենատարբեր հարցերով։*

*Իրոք, ագիտատոր Ասլանյանը անպատասխան չի թողնում բանվորների հարցերը։ Նա ոչ միայն պատասխանում է ունկնդիրների հարցերին, այլև հանգամանորեն պարզաբանում նրանց մեր կյանքի նորը, կոմունիստականն ու առաջավորը։*

*Ագիտատորի զրույցների թեման բազմազան է։ Նա ունկնդիրների հետ զրույցներ է ունեցել ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ) պլենումի արդյունքների և պղնձաքիմիական կոմբինատի առջև դրված խնդիրների, կոմունիզմի կառուցման և նոր մարդու դաստիարակության, աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիների, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք ունենալու և շատ ուրիշ*

հարցերի մասին։ Այդ զրույցները և ընկերական խորհուրդները օգնում են մարդկանց, մոբիլիզացնում են նրանց ուժերը արտադրական պլանները բարձր ցուցանիշներով կատարելու գործում։ Ցեխի բանվորները ջերմորեն սիրում են իրենց գործը և իրենց աշխատանքում հասել են մեծ հաջողությունների, ցեխը արժանացել է կոմունիստական աշխատանքի կոչման։

Ագիտատոր Ասլանյանը լուրջ ուշադրություն է դարձնում բանվորներին ընկերասիրության և կոլեկտիվիզմի ոգով դաստիարակելու վրա։ Ցեխում իրար հետ կողք-կողքի աշխատում են հայեր, ռուսներ, ուկրաինացիներ, մոլդավացիներ, հույներ և շատ ուրիշ ազգության ներկայացուցիչներ։ Ագիտատորը սիստեմատիկաբար նրանց հետ զրույցներ է ունենում ժողովուրդների բարեկամության, ՍՍՌՄ ժողովուրդների ձեռք բերած հաջողությունների մասին։ Ագիտատորի նախաձեռնությամբ, բացի զրույցներից, ցեխում անցկացվում են նաև բարեկամության և ընկերասիրության երեկոներ։ Առանձնապես հետաքրքիր և բովանդակալից անցավ կոմբինատի կուլտուրայի պալատում վերջերս կազմակերպված քիմիագործների երեկոն, որտեղ բանվորների հետ հետաքրքիր զրույց ունեցավ ագիտատոր Ս. Ասլանյանը։ Այնուհետև ցեխի առաջավոր բանվորներից 10 հոգու տրվեց կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչում և նրանց հանձնվեցին պատվոգրեր։ Ցեխի բանվորների ուժերով տեղի ունեցավ նաև համերգ, ցուցադրվեց կինոնկար։ Ագիտատոր Ս. Ասլանյանը պարտբյուրոյի օգնությամբ հաճախակի կազմակերպում է արտադրության առաջավորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և իրենց գործարանում արտադրական ուսուցումը անցկացնող դպրոցականների հանդիպումներ։

Կոմբինատի պարտկազմակերպության օգնությամբ ագիտատորը ցեխում բանվորների համար հաճախակի կազմակերպում է նաև դասախոսություններ և զեկուցումներ։ Օրինակ, տեխնոլոգ Լ. Աղաբեկյանը ունկնդիրների հետ զրույց է ունեցել «Կոմունիստական աշխատանքի շարժումը աշխատավորների դաստիարակության կարևորագույն պայմանն է» թեմայով, իսկ «Գիտելիք» ընկերության անդամ Ս. Զարգարյանը դասախոսություն է կարդացել «Աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիները» թեմայով։





Ցեխում ագիտացիան դարձել է կենդանի ու նպատակասլաց։ Ագիտատորը իր և առաջավորների անձնական օրինակով ոգևորում է մյուսներին։ Դրա շնորհիվ կոմբինատում քիմիական ցեխը անցել է առաջավորների շարքը։ Այստեղ անհամեմատ բարձր է աշխատանքի արտադրողականությունը։ 1963 թվականի տարեկան պլանը ցեխը կատարեց 110,1 տոկոսով, իսկ 1964 թվականի առաջին եռամսյակի արտադրական պլանը՝ 101,4 տոկոսով։ Պլանից ավելի արտադրվել է հարյուրավոր տոննա պղնձարջասպ։ Ցեխի կոլեկտիվը այժմ հետևողական պայքար է կատարում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների անթերի կատարման համար։

Ագիտատոր Ասլանյանը ոչ միայն զրույցներ է ունենում նորարարների, առաջավորների և ռացիոնալիզատորների փորձի մասին, այլև հետևում է, որ արտադրության մեջ արմատավորվի առաջավոր փորձը և հատկապես նոր տեխնիկան։ Նրա ակտիվ մասնակցությամբ ցեխում արդեն տեղադրված են նոր բյուրեղացման մեքենա և օդամղիչ։ Դրանց միջոցով ավտոմատացվում են տեխնոլոգիական պրոցեսները։ Շուտով կտեղադրվեն նաև նոր մեքենաներ, որոնք զգալիորեն կբարձրացնեն աշխատանքի արտադրողականությունը և կիջեցնեն արտադրանքի ինքնարժեքը։ Ցեխում ռացիոնալիզատորական 7 առաջարկություններից արտադրության մեջ արմատավորվել է 5-ը։

Ագիտատոր Ասլանյանը իր ագիտացիոն աշխատանքի հմտությունն ու փորձը օգտագործում է նաև մարդկանց հետ անհատական դաստիարակչական աշխատանք կատարելու գործում։ Այս տեսակետից նա ոչ միայն պաշտոնական պարտականություններ է կատարում, այլև ցուցաբերում է զգայուն և հոգատար վերաբերմունք ունկնդիրների նկատմամբ։ Նա միշտ հետաքրքրվում է իր աշխատանքային ընկերների կյանքով, իսկ եթե հարկ է լինում, օգնում նրանց։ Մի անգամ ագիտատորին շատ հուզեց ցեխի բանվոր Ա. Մոսինյանի վարքագիծը։ Այդ մարդու հետ աշխատանքում և կենցաղում կատարվում էին անցանկալի դեպքեր։ Ընկնելով վատ միջավայր, նա սկզբում սկսեց անուշադիր լինել ընտանիքի նկատմամբ, երեխաների նկատ-

մամբ։ Հաճախ զբաղվում էր հարբեցողությամբ, խախտում աշխատանքային կարգապահությունը, թերակատարում արտադրական պլանները և այլն։ Ինչ խոսք, որ Մոսինյանը խիստ կարիք էր զգում հոգատար մի ընկերոջ, որը կարողանար դուրս բերել մարդուն այդ վիճակից և օգնել նրան կանգնելու ուղիղ ճանապարհի վրա։ Ագիտատոր Ասլանյանը խորապես մտահոգված լինելով Մոսինյանի վիճակով, համբերատար կերպով սկսեց նրան դաստիարակել։ Նախ ագիտատորը Մոսինյանին ներգրավում է կոլեկտիվի միջոցառումների մեջ, ապա նրա հետ ունենում է ամենօրյա ընկերական զրույցներ, բարեկամական և օգտակար շատ խորհուրդներ է տալիս նրան։

Ագիտատոր Ասլանյանը դիմեց նաև կոլեկտիվի օգնությանը, կոլեկտիվի միջոցով և կոլեկտիվի հետ միասին կատարելու դաստիարակչական աշխատանք, վերափոխելու Մոսինյանին, վերադարձնելու նրան իր ընտանիքը։ Սկզբում ցեխի կոլեկտիվի ժողովում քննվեց Ա. Մոսինյանի վարքագիծը, ոչ թե նրան դատապարտելու կամ կոլեկտիվից վտարելու, այլ նրան օգնելու, նրան ճիշտ ճանապարհի բերելու համար։ Կոլեկտիվը հոգատարությամբ շրջապատեց Մոսինյանին։ Ցեխի բանվորների և ագիտատորի օգնությամբ նա բնակարան ստացավ, ընկերների միջամտությամբ ընդունվեց բաներիտ դպրոց։ Շուտով Մոսինյանը բոլորովին փոխվեց։ Նա վերջ տվեց հարբեցողությանն ու հակահասարակական արարքներին, ապա սկսեց ավելի ուշադիր և հոգատար լինել ընտանիքի նկատմամբ։ Սկսեց ակտիվորեն մասնակցել ցեխի կոլեկտիվի միջոցառումներին, կատարել արտադրական նորմաները։ Այսպիսով, աստիճանաբար Մոսինյանը դարձավ ցեխի լավագույն բանվորներից մեկը։ 1962 թվականի մարտին նրան առաջ քաշեցին ցեխի հերթափոխության պետ, 1963 թվականին Մոսինյանի ղեկավարած հերթափոխը արտադրական պլանը կատարեց 102 տոկոսով, իսկ 1964 թվականի առաջին եռամսյակինը՝ 104 տոկոսով։ Ընկ. Մոսինյանը այժմ առաջավոր հերթափոխության պետ է և իրեն լավ է դրսևորում կենցաղում։

Ագիտատորի խելացի ու մտածված աշխատանքը, կոլեկտիվի ներգործությունը օգնեց մարդուն գտնելու իր արժանի տեղը կյանքում։

ՀՐ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



# ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՄԻՋՈՑՈՎ

Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի նախապատրաստական ցեխի լուսավոր սրահներում, հաստոցների առջև խումբ-խումբ աշխատում էին երիտասարդ աղջիկները։ Տեսնելով նրանց աշխատանքը՝ չես կարողանում զսպել հիացմունքդ։ Ներկայացնում են նրանցից մեկին, մի աշխույժ, թխահեր աղջկա։ Մեր Շաքեն է,— ասում է ագիտատորը,— ցեխի առաջավոր բանվորուհիներից մեկը։ Ես արդեն գիտեի նրա մասին և ճանաչում էի նրան։ Չէ՞ որ քիչ առաջ պատվո տախտակի վրա տեսել էի նրա և ցեխի մյուս առաջավորների լուսանկարներն ու այժմ հնարավորություն ունեցա ավելի մոտիկից ծանոթանալու նրա աշխատանքային առօրյային։ Յոթնամյակի 6-րդ տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու վճռականությամբ լցված այդ մարդիկ աշխատում են մեծ եռանդով, ձգտում թողարկել միայն բարձրորակ արտադրանք։

Կոմբինատում խոտանի դեմ հայտարարված է արշավ։ Այդ խնդրի կատարման համար իր կարևոր դերն ունի ցեխի պատին ամրացված՝ «Ընկեր մետաքսագործ, պայքարի՛ր խոտանի դեմ, թողարկիր միայն գերազանց արտադրանք» խորագիրն ունեցող ստենդը, որը ցեխի աշխատողներին թվերով ու փաստերով պատմում է յուրաքանչյուր մետր խոտանի տխուր հետևանքների մասին։

Ոլորման ցեխում փակցված մի ուրիշ պլակատ պատմում է, որ «Մեկ կիլոգրամ ոլորված բնական մետաքսաթելի խնայողությունից արտադրանքի ինքնարժեքը կիջնի 55 ռուբլով»։

Ահա ամբողջ ձեռնարկության նվաճումներն ամփոփող մի այլ ստենդ, որի վերևում ճաշակով գրված է. «Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի արտադրանքն ըստ տեսակների ու նրա աճման տեմպերը»։ Այդ ստենդը դիտողին ծանոթացնում է, թե զարգացման ինչպիսի փայլուն հեռանկարներ ունի ձեռնար-

կությունը յոթնամյակի ընթացքում։ Բայց միայն հե-
ռանկարները չեն, որ ոգևորում են։ Գործարանի կենտ-
րոնական մասերից մեկում ամրացված մյուս ստենդ-
ները տեղեկացնում են, որ ցեխերի աշխատողները
անդադրում ձգտում են արտադրությունը կատարելա-
գործելու, նորն ու առաջավորը արմատավորելու, գյու-
տարարությունն ու ռացիոնալիզատորությունը ծավալե-
լու նշանաբանով։

Կոմբինատում երևան են եկել բազմաթիվ թեմատիկ
պլակատներ և ստենդներ, որոնք մատչելի ձևով պրո-
պագանդում են ռացիոնալիզատորների և գյուտարարնե-
րի նվաճումները։ Այդ թեմայով կազմակերպված
ստենդները բանվորների, տեխնիկների, ինժեներների
մոտ արթնացնում են ստեղծագործական միտք, նրանց
ջանքերն ուղղում արտադրական պրոցեսների կատա-
րելագործմանը։ Պլակատներից մեկը ազդարարում է
«Ռացիոնալիզատորնե՛ր, պայքարեցեք տեխնիկական
պրոգրեսի համար»։

Քայլում ես ոլորման ցեխով և շուրջդ նայելով, աշ-
խատանքի բերկրանքով տարված մարդկանց առանց
անհանգստացնելու իմանում ես նրանց մասին ամեն
ինչ, նույնիսկ անուն ազգանունները։ Փակցված պլա-
կատները և լոզունգները պատմում են, որ ցեխի կոլեկ-
տիվը պայքարում է կոմունիստական աշխատանքի
կոչման համար։ Ցեխի կենտրոնական մասում դրված
կարմիր վիմպելները հայտնում են, որ Ս. Յակովլևի և
Վ. Չիժիկյանի ղեկավարած բրիգադները արժանացել
են կոմունիստական աշխատանքի բարձր կոչման։

Կոմբինատում լայն պայքար է տարվում նաև խնա-
յողության համար։ Այսպես, գործող ցեխի պատի վրա
մեծ տառերով գրված է. «Ջուլհակ, հիշիր, որ մեկ տար-
վա հումքի խնայողության հաշվին կոմբինատը կարող է
աշխատել 4 օր»։

Կոմբինատում ցուցադրական ագիտացիայի միջո-
ցով լայն պայքար է տարվում հնի մնացուկների և կո-
մունիստական բարոյականության սկզբունքներին խորթ
երևույթների դեմ։ Այդ տեսակետից հիշատակության
արժանի են «Մի անցիր կողքով», «Ոզնի», «Տագնապ» և
«Կայծակ» թերթիկները։ Առանձին ցեխերում անհրա-



ժեշտ ուշադրություն չէր դարձվում աշխատանքային
կարգապահության, սանիտարական մաքրության վրա։
Պարտիական կազմակերպությունը ելնելով դրանից՝ լույս
է ընծայում «Մի անցիր կողքով» հատուկ թերթիկը, որ-
տեղ լուսանկարներով և համապատասխան բացատրու-
թյուններով վեր են հանվում ցեխերում տեղ գտած թե-
րությունները։ Կոմբինատում պարտիական կազմակեր-
պության մշտական օգնականներն են «Կոմերիտական
լուսարձակ» և «Խոտան Թողարկողի» տախտակները,
որոնք պայքարում են ձրիակերների, ժողովրդական
ունեցվածքը հափշտակողների և մեծամտացած մարդ-
կանց դեմ։

Ցուցադրական ագիտացիայի կազմակերպման գոր-
ծում մեծ տեղ է տրվում առաջավոր փորձի տարած-
մանն ու ընդհանրացմանը։ Այսպես, գործող ցեխում
դրված է առաջավոր փորձի փոխանակման տախտակ,
որը դիտողը ծանոթանում է առաջավոր ջուլհակուհի
Ջուլիետա Մհերոյանի աշխատանքի փորձի հետ։

Կոմբինատի պարտիական կազմակերպությունը
ցուցադրական ագիտացիան կազմակերպելիս կարևոր և
առաջնային տեղ է տալիս այն բանին, որպեսզի յուրա-
քանչյուր պլակատ, լոզունգ, արդեն լինի գաղափարա-
պես հագեցված, գեղարվեստորեն ձևավորված, որպեսզի
այն գրավի դիտողի ուշադրությունը։ Ագիտատորները
կարողացել են իրենց աշխատանքում հասնել այն բա-
նին, որ ցուցադրական ագիտացիայի միջոցով վերացրել
են կոմբինատի աշխատանքներում տեղ գտած մի շարք
թերություններ, խարազանելով ետ մնացողներին, դըր-
վատելով առաջավորներին, քաջալերելով գյուտարարին,
մոբիլիզացրել են բանվորներին պլանները հաջող կա-
տարելու համար։

Ս. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

# ՉԻՆԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐՆ ՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՆՐԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ, ՆԱՑԻՈՆԱԼԻՍՏԱԿԱՆ, ՆԵՈՏՐՈՑԿԻՍՏԱԿԱՆ ԹԵՔՈՒՄ ԵՆ

Կոմունիստական շարժումն իր դժվարին ու բարդ պատմական ճանապարհին բազմիցս առիթ է ունեցել բախվելու հակամարքսիստական, հակալենինյան հոսանքների հետ, և նա միշտ դրանց հաղթել է սկզբունքային հիման վրա։ Եվ այն հայացքներն ու դիրքորոշումները, որ այսօր քարոզում են չինական ղեկավարները, ինչ-որ միանգամայն նոր բան չեն. ոչ, այդպիսի կոնցեպցիաների դեմ լենինիզմն արդեն առիթ է ունեցել պայքարելու։ Չինաստանի կոմպարտիայի գործիչները շատ բան փոխ են առել անցյալում հանդես եկած մանրբուրժուական ռևոլյուցիոնության ներկայացուցիչներից, տրոցկիստներից ու նացիոնալիստներից, իրենց նախորդների հայացքները հարմարեցնելով արդի պայմաններին և իրենց պահանջմունքներին։

Վ. Ի. Լենինը նշել է, որ բոլշևիզմը աճել, ամրապնդվել ու կոփվել է գլխավորապես աջ օպորտունիզմի դեմ մղված պայքարում։ Միևնույն ժամանակ Լենինն ընդգծել է բոլշևիզմի փորձի մյուս կողմի նշանակությունը, որի մասին, ասել է նա, արտասահմանում դեռ չափազանց անբավարար գիտեն։ «Բոլշևիզմը,— գրել է Լենինը «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունում,— աճել, կազմավորվել ու կոփվել է երկարամյա պայքար մղելով մանրբուրժուական ռևոլյուցիոնության դեմ, որը նմանվում է անարխիզմին կամ որոշ բան նրանից փոխ է առնում, որն ամեն մի էական բանում նահանջում է տոկուն պրոլետարական դասակարգային պայքարի պայմաններից ու պահանջներից», (Երկեր, հատ. 31, էջ 18—19)։



Բնորոշ է, որ չինական ղեկավարները, որոնք սիրում են տեղի-անտեղի վկայակոչել անցյալի գաղափարական տարաձայնությունների օրինակները, անցկացնել պատմական զուգահեռներ, լիովին լռությամբ են մատնում բոլշևիկյան փորձի այդ կողմը։ Եվ դա հասկանալի է. մանրբուրժուական ռևոլյուցիոնության կամ, ինչպես հեգնանքով ասել է Լենինը, մանրբուրժուական «ռևոլյուցիոնարիզմի» ներկայացուցիչների դեմ ուղղված Լենինի յուրաքանչյուր խոսքն ուղղակի հարվածում է Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների այժմյան գաղափարական - քաղաքական կոնցեպցիաներին և դիրքորոշումներին։

Մանրբուրժուական ռևոլյուցիոնության ակունքները Լենինը տեսել է մանր սեփականատիրոջ, մանր տնտեսատիրոջ հատուկ վիճակի մեջ, որը հեշտությամբ անցնում է «ծայրահեղ ռևոլյուցիոնության», բայց ընդունակ չէ ցուցաբերելու տոկունություն, կազմակերպվածություն, կարգապահություն, կայունություն, մեկ ծայրահեղությունից դեպի մյուսը նետվելու հակում ունի։ Օրինակ, էսեռները, որոնց դեմ մեր պարտիան երկար տարիներ պայքարել է, կազմել են մի պարտիա, որն «ամենից ավելի էր արտահայտում մանրբուրժուական ռևոլյուցիոնության տենդենցները» (Երկեր, հատ. 31, էջ 20)։ Էսեռները ժխտում էին բանվոր դասակարգի առաջատար դերը և պնդում, թե իբր հենց գյուղացիական շարժումն է իսկական սոցիալիստականը։ Չինական ղեկավարներն էլ նսեմացնում են բանվոր դասակարգի և նրա արհմիությունների դերը, հույսները դնում են գյուղացիության վրա։

Լենինը բազմիցս նշել է, որ պրոլետարիատը երաշխավորված չէ իր շարքերը մանրբուրժուական գաղափարախոսության և նախապաշարմունքների ներթափանցումից։ Մանրբուրժուական ռևոլյուցիոներներից լավագույնները, մտնելով պրոլետարական պարտիաների մեջ, վերադաստիարակվում, լրջորեն սովորում են մարքսիզմը, վերջիվերջո դառնում են իսկական ռևոլյուցիոներներ։ Ուրիշները դեռ չեն հասցրել կամ ընդունակ չեն պրոլետարական պարտիայից ընդօրինակելու ոչինչ, «բացի մի քանի սերտած բառերից, անգիր արած «պայծառ» լոզունգներից...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 16, էջ 66)։

Ինչպես հայտնի է, մեր պարտիան մանրբուրժուական «ձախ» տատանումների դեմ ամենից շատ հարկա-

դրված է եղել պայքարել իշխանությունը գրավելուց հետո, սովետական պետության կառուցման առաջին տարիներին։ Լենինը անհաշտ պայքար է մղել «ձախ կոմունիստների», «բանվորական օպոզիցիայի», տրոցկիզմի, ուլտրա—«ձախերի» դեմ այն ժամանակվա երիտասարդ կոմունիստական շարժման մեջ։

Բրեստի հաշտության պայմանագիրը կնքելու ժամանակաշրջանում, երբ «ձախ կոմունիստները» փորձում էին Սովետական ռեսպուբլիկային պարտադրել «ռևոլյուցիոն պատերազմի» ավանտյուրիստական, կործանարար տակտիկան, Լենինը նշում էր, որ չնայած ռևոլյուցիոն բարձրաձայն ֆրազներին, «ձախ կոմունիստների» հայացքների հիմքում ընկած են անելանելի հուսահատության, կատարյալ հուսալքման տրամադրությունները (տես՝ Երկեր, հատ. 27, էջ 68)։ Դիմելով «ձախ կոմունիստներին», Լենինն ասել է, որ «դուք իմպերիալիստական պրովոկացիայի գործիք եք ձեր օբյեկտիվ դերի շնորհիվ։ Իսկ ձեր սուբյեկտիվ «հոգեբանությունը» կատաղած մանր բուրժուազիայի հոգեբանությունն է, որը հոխորտում է և պարծենում, բայց հիանալի զգում է, որ պրոլետարն իրավացի է...»։ (Երկ, հատ. 27, էջ 40)։

Այժմ հատկապես կարևոր է հիշեցնել այն սուր պայքարի մասին, որ մեր պարտիան մղել է տրոցկիզմի դեմ։ Տրոցկիզմը պարզ արտահայտված մանրբուրժուական թեքում էր։ Տրոցկին և նրա համախոհները, որոնք իրենց հայտարարում էին համաշխարհային ռևոլյուցիայի «իսկական» մարտիկներ, իրականում պայքարում էին լենինիզմի դեմ, ռևոլյուցիայի դեմ։ Տրոցկիզմը բոլշևիկյան պարտիականությունը, պարտիայի շարքերի համախմբվածությունը ժխտելու մարմնավորումն էր. տրոցկիզմի «հոգին» էր ֆրակցիոնականությունը։ Տրոցկիստները կապվում էին ոչ միայն Կոմինտեռնի ներսում եղած ֆրակցիոն խմբերի, այլև այն կազմակերպությունների խմբերի ու առանձին անձանց հետ, որոնք երբեք չեն պատկանել կոմպարտիաներին, ինչպես նաև կոմպարտիաների շարքերից վտարված թշնամիների ու դավաճանների հետ։

Ստիպված պետք է նշենք, որ չինական ղեկավարները հասել են այնտեղ, որ իրենց շատ կոնցեպցիաներ վերցնում են տրոցկիզմի գաղափարական պաշարից։ Եթե համեմատենք այն, ինչի համար պայքարել



են տրոցկիստներն ու մանրբուրժուական մյուս հոսանքների ներկայացուցիչները այն բանի հետ, ինչ քարոզում են չինական ղեկավարները, ապա կտեսնենք հոգիների հուզիչ հարազատություն։

Ինչպես։ Պատերազմի և խաղաղության պրոբլեմների շուրջը չինական ղեկավարների հայացքները ոչ այլ ինչ են, եթե ոչ տրոցկիստական «ոչ խաղաղություն, ոչ պատերազմ» լոզունգի կրկնությունը նոր պայմաններում։ Կապիտալիզմի հետ խաղաղ մրցության դեմ Չինաստանի կոմպարտիայի կենտկոմի ղեկավարության համառ ելույթները նույնպես համաշխարհային տնտեսական շինարարությունից հրաժարվելու և «ռևոլյուցիոն պատերազմի» տակտիկային անցնելու, զենքը ձեռքին համաշխարհային ռևոլյուցիան «առաջ մղելու» տակտիկային անցնելու վերաբերյալ Տրոցկու հին դիրքորոշման կրկնությունն է։ Այժմ չինական ղեկավարներն ըստ էության կոմպարտիաներին վեճ են պարտադրում այն նույն հարցի շուրջը, որը դրված էր «պերմանենտ ռևոլյուցիայի» տրոցկիստական տեսության դեմ մղված պայքարի կենտրոնում։ Վեճի էությունը հետևյալն է. արդյոք ընթանալ «ռևոլյուցիոն» ավանտյուրաների ճանապարհո՞վ, թե հետևել սոցիալիզմի համաշխարհային սիստեմի տնտեսական ու քաղաքական հզորության ամրապնդման, կապիտալիստական երկրներում ռևոլյուցիոն շարժման և ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի զարգացման լենինյան կուրսին, լիովին հաշվի առնելով Լենինի այն ցուցումները, որ ռևոլյուցիան յուրաքանչյուր երկրում ներքին դասակարգային հակասությունների սրման արդյունք է։ Չինական կոնցեպցիաները, որոնք չափազանցնում են բռնության, հարկադրման դերը ռևոլյուցիայի ու սոցիալիստական շինարարության մեջ, կրում են տրոցկիզմի կնիքը։

Առանց չափազանցնելու կարելի է ասել, որ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների տեսական ու քաղաքական բոլոր հայացքները մեծ մասամբ միջազգային ռևոլյուցիոն շարժման կողմից մերժված տրոցկիզմի կրկներգերն են։ Միայն մանրբուրժուական «ուլտրա»-ռևոլյուցիոները կարող է տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականության մեջ տեսնել իմպերիալիզմի դեմ պայքարելուց հրաժարում, «ռևոլյուցիայի ժխտում»։ Միայն նա է ողջունում այն թեզը, թե «ռևոլյուցիոն պատերազ-

մը»՝ երկու սոցիալական սիստեմների հակասություններին վերջ տալու «վերջին, վճռական» միջոցն է։ Միայն մանրբուրժուական «գեր»-ռևոլյուցիոները կարող է պահանջել «անմիջապես» և «ամենուրեք» ռևոլյուցիա «սկսել», առանց հաշվի առնելու կոնկրետ պայմանները և ուժերի հարաբերակցությունը։

Չինական ղեկավարները տրոցկիստներից ընդօրինակել են ոչ միայն նրանց հայացքները, այլև ֆրակցիոն, պառակտողական մեթոդները։ Ի դեպ, ՍՄԿՊ-ի և Սովետական Միության հասցեին չինական պրոպագանդայի չարանենգ զրպարտություններն ինչ-որ նոր բան չեն։ Ինչպես հայտնի է, Տրոցկին և Արևմուտքի ուլտրա-«ձախերը» 20-ական թվականներին մեր պարտիայի ու երկրի հասցեին տարածում էին ամենանողկալի հերյուրանքը։ Նրանք հավատացնում էին, թե իբր ՀամԿ(բ)Պ-ն ու ՍՍՌՄ կառավարությունն «աճեցնում են հակառևոլյուցիայի տարրեր», Սովետական Միությունը «վերասերվում է», իսկ նրա միջազգային քաղաքականությունը «համաշխարհային մասշտաբով հակառևոլյուցիոն ուժերի հետ դաշինքի» քաղաքականություն է, իբր ՀամԿ(բ)Պ-ի ղեկավարությունը «հանգամանորեն մշակել է կոմունիստական ռևոլյուցիայի վերացման ծրագիրը»։ Աղբակույտից հանված այս հերյուրանքների կրկնությունը չէ՞ն արդյոք չինական ղեկավարների այն պնդումները, թե իբր ՍՄԿՊ-ն խրախուսում է «կապիտալիստական ուժերի սանձարձակությունը», թե ՍՍՌՄ-ն «վերասերվում է», «դաշինք է կնքում իմպերիալիզմի և պատերազմի ուժերի հետ»։ Եթե Տրոցկին կենդանի լիներ, հավանաբար պեկինցի թեորետիկներին կմեղադրեր բանագողության մեջ։

Ինչ վերաբերում է այժմյան տրոցկիզմի պարագլուխներին, ապա նրանք արդեն նման մեղադրանքներ են ներկայացնում չինական ղեկավարներին։ Լատինական Ամերիկայում տրոցկիզմի առաջնորդներից մեկը՝ Պասադասը, անցյալ տարվա հունիսին ասել է. «Ընկեր չինացիներ, դուք չեք կարող պնդել, թե որպես ռևոլյուցիոն եզրակացություններ ձեր կողմից առաջ քաշված բոլոր հարցերը միայն ձեր տեսական ու քաղաքական աշխատանքների արդյունքն են։ Դրանք 4-րդ Ինտերնացիոնալի եզրակացություններն են»։ Եվ հարկավոր է ասել, որ այդ նախատինքն անհիմն չէ։ Մոլորվում է նա, ով ենթադրում է, թե չինական այն տեսությունը, թե Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի շրջանները հանդի-



սանում են «համաշխարհային ռևոլյուցիայի փոթորիկների գլխավոր գոտին», մի յուրատեսակ ստեղծագործություն է։ Ո՛չ, դա այժմյան տրոցկիզմի հիմնական թեզերից մեկի գրեթե բառացի կրկնությունն է։ Այսպես կոչված IV Ինտերնացիոնալի որոշումներում կարելի է կարդալ, որ «համաշխարհային ռևոլյուցիայի գլխավոր կենտրոնը ժամանակավորապես փոխադրվել է գաղութային աշխարհ»։ Տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը, գուշակում են տրոցկիստական աղմկարարները, «ոչ միայն հնարավոր չէ, այլև վնասակար է բոլոր երկրների բանվոր դասակարգի համար», քանի որ տանում է «դեպի կապիտալիզմի դիրքերի ամրապնդում և սոցիալիզմի դիրքերի թուլացում»։ «Հարկավոր է,— պարծենկոտությամբ հայտարարում են նրանք,— իսկական ռևոլյուցիոներ համարել միայն նրան... ով պատրաստ է աներկյուղ դիմավորելու կապիտալիզմի կողմից նախապատրաստվող ատոմային պատերազմի հետևանքները» և այլն։ Ահա թե, ուրեմն, չինական պարագլուխներն ինչն են համարում իրենց նոր հայտնագործությունը և այսպես կոչված ռևոլյուցիոն սկզբունքները։ Չինական ղեկավարները հավանաբար այսպես են դատում. «Այսօրվա տրոցկիզմը քիչ հայտնի հոսանք է, կարելի է օգտագործել նրա գաղափարները, դրանց տալով «չինականացված» տեսք»։ Սակայն ինչպես էլ չինական ղեկավարությունը ցանկանա լռության մատնել այն իսկական աղբյուրը, որից գաղափարներ է քաղում, նրան չի հաջողվի թաքցնել այն, որ իր հայացքները համընկնում են հին և ժամանակակից տրոցկիստների հայացքների հետ։

Տրոցկիստները բացահայտորեն չինական ղեկավարների քաղաքական կուրսի հետ են կապում իրենց վաղուց թառամած շարժումն աշխուժացնելու հույսերը։ «Չինաստանի կոմպարտիայի քաղաքական դիրքերը,— իր այսպես կոչված «մանիֆեստում» գրել է տրոցկիստական «Ինտերնացիոնալի» վեցերորդ կոնգրեսը,— ցույց են տալիս, որ բացվում են գործունեության այնպիսի հնարավորություններ, որոնք անցյալում տրոցկիզմը երբեք չի ունեցել»։

Այսօրվա տրոցկիստները չեն թաքցնում իրենց ուրախությունը նաև այն առթիվ, որ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները կոպիտ հարձակումներ են գործում ՍՄԿՊ-ի, Ֆրանսիայի, Իտալիայի, ԱՄՆ-ի, Հնդկաստանի և այլ երկրների կոմպարտիաների ղեկավար-

ների վրա։ Տրոցկիստական «Ինտերնացիոնալի» միացյալ քարտուղարությունն անցյալ տարվա հուլիսի վերջերին Փարիզում հրապարակված հայտարարության մեջ չինական ղեկավարներին հավաստիացրել է, որ ինքը «նրանց կաջակցի» ՍՄԿՊ-ի, ինչպես նաև հնդկական, ամերիկյան, ֆրանսիական, իտալական և այլ կոմպարտիաների դեմ մղվող պայքարում։ Տրոցկիստական «Ինտերնացիոնալի» գործկոմի 1963 թվականի ամռանը գումարված նիստը հատուկ բանաձևում հավանություն է տվել «չինացիներին միանալու և IV Ինտերնացիոնալի ու չինական ընկերների միջև միասնական ճակատի համար պայքարելու պատմական խնդրին»։

Այսպիսով, ՍՄԿՊ-ի և համաշխարհային կոմունիստական շարժման դեմ պայքարի տրամաբանությունը Չինաստանի կոմպարտիայի ղեկավարներին հասցրել է այնտեղ, որ նրանք ավելի ու ավելի են միանում մարքսիզմ-լենինիզմի ամենաոխերիմ թշնամու՝ տրոցկիզմի հետ։

Կար, ժամանակ, երբ չինական ղեկավարները իրենք էին տեսնում Չինաստանի կոմպարտիայի վրա մանրբուրժուական ճնշման վտանգը։ Մանրբուրժուական գաղափարախոսությունը, ասել է Մաո Ցզե-դունը, Չինաստանի կոմպարտիայում իր արտահայտությունն է գտնում «մեկ դեպի ձախ, մեկ դեպի աջ նետվելու, ձախ ռևոլյուցիոն ֆրազների ու լոզունգների սիրահար լինելու, աղանդավորական-պարփակվածության և ավանտյուրիզմի մեջ»։ Չինաստանի կոմպարտիայի VIII համագումարը (1956 թ.) իր բանաձևում նշել է. «... Պարտիական կադրային շատ աշխատողներ առայժմ չեն ազատվել գիտակցության մեջ և աշխատանքում գոյություն ունեցող սուբյեկտիվիզմից... Բուրժուական ու մանրբուրժուական գաղափարախոսության մնացուկներն այսուհետև ևս մեր հասարակական կյանքում երկար ժամանակ գոյություն կունենան, իսկ սոցիալիստական շինարարության ընթացքում մենք շարունակ կբախվենք մեզ համար միանգամայն նոր հարցերի և աշխատանքի բնագավառների հետ։ Եթե մենք ենթարկվենք ոչ պրոլետարական գաղափարախոսության ազդեցությանը, մեծամտությանն ու ինքնահանգստացմանը, այն կարծիքն ունենանք, թե մենք անսխալ ենք և ամենայն համեստությամբ չսովորենք, ապա մենք առաջվա պես չենք կարողանա խույս տալ սուբյեկտիվիզմի չարիքից»։

Այժմ չինական ղեկավարները նույնիսկ չեն խոսում մանրբուրժուական վերասերման վտանգի մասին. արդյոք դրա պատճառն այն չէ՞, որ մանրբուրժուական գաղափարախոսությունը գերազանցել է նրանց սեփական հայացքներում, նրանց քաղաքական գծի և գործունեության մեթոդների մեջ։

«Պրոլետարիատի պատմական խնդիրն է,— գրել է Վ. Ի. Լենինը,— մարսել, վերաուսուցանել, վերադաստիարակել հին հասարակության բոլոր տարրերը, որոնց նա ժառանգություն է թողնում պրոլետարիատին, որպես մանրբուրժուազիայից ելածների։ Բայց դրա համար հարկավոր է, որպեսզի պրոլետարիա՛տը վերադաստիարակի այդ ելուկներին, նա՛ ազդի նրանց վրա, և ոչ թե նրանք սրա վրա» (Երկեր, հատ. 16, էջ 65)։

Մանրբուրժուական տարրերի ճնշմանը հակադրվելու, պրոլետարական սոցիալիզմի գիծը հաստատակամորեն պաշտպանելու համար Չինաստանի կոմպարտիայի ղեկավարներն անհրաժեշտ մարքսիստական-լենինյան կոփում չունեցան. միայն դրանով կարելի է բացատրել այն, որ մանրբուրժուական գաղափարախոսությունն իր կնիքն է դրել ինչպես նրանց ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության վրա։

Բոլոր երկրների մարքսիստ-լենինյաններն այժմ գիտեն այսպես կոչված «մեծ ցատկի» և ժողովրդական կոմունաների քաղաքականության արդյունքների մասին։ Չի կարելի այդ քաղաքականության մեջ չտեսնել հասարակական զարգացման անհրաժեշտ փուլերի «վրայով ցատկելու» Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների «ձախ» փորձերը։

(Շարունակելի)

ՍՄԿՊ Կենտկոմի «Կոմունիստ» ամսագրի
1964 թ. 5-րդ համարից

---

# ԱՄՆ-Ը ՊՐԵԶԻԴԵՆՏԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ

Ներկայումս ԱՄՆ-ում լայնորեն ծավալվել է նախ-
ընտրական կամպանիա։ ԱՄՆ-ի պրեզիդենտի հերթա-
կան ընտրությունները տեղի կունենան ընթացիկ տար-
վա նոյեմբերի 3-ին։ Նախընտրական կամպանիան,
որն սկսվել էր անցյալ տարվա կեսից, ընդհատվեց Քե-
նեդիի ողբերգական մահով։ Այժմ այդ կամպանիան
վերսկսվել է։

ԱՄՆ-ի դեմոկրատական պարտիայից պրեզիդենտի
թեկնածուի ռեալ հավակնորդ համարվում է Լինդոն
Ջոնսոնը, որը փորձված քաղաքագետ է, ճկուն դիվանա-
գետ։ Ջոնսոնի կապիտալը հաշվվում է մոտ չորս միլիոն
դոլար։ Ամերիկյան որոշ գործարար շրջաններ պաշտ-
պանում են նրան։ Նրան աջակցում են մոնոպոլիստներ
Հենրի Ֆորդի և Դյուպոնի ընկերությունների ներկայացու-
ցիչները։

Ինչպես հայտնի է, Ջոնսոնն իր «Երկրի դրության
մասին» ուղերձում խոստանում է վերջ տալ աղքատու-
թյանը երկրում և հասնել նեգրերի քաղաքացիական
իրավունքների վերաբերյալ օրինագծի ընդունմանը
կոնգրեսում։ Արտաքին քաղաքականության բնագավա-
ռում Ջոնսոնը խոստացավ վարել Քենեդիի կուրսը։
Դրանք ձայներ ստանալու լավ միջոցներ են։

Եթե դեմոկրատական պարտիայում պրեզիդենտի
թեկնածու Ջոնսոնի համար հակառակորդներ չկան,
ապա բավականին շատ են վիցե-պրեզիդենտի թեկնա-
ծուի հավակնորդները։ Դրանք են. «Խաղաղության կոր-
պուսի» ղեկավար Սերջենտ Շրիվերը (Քենեդիի փեսան
է), առևտրի մինիստրի տեղակալ Ֆրանկլին Ռուզվելտ
կրտսերը, Նյու-Յորքի քաղաքագլուխ Ռոբերտ Վագները,
Կալիֆորնիայի նահանգապետ Էդմոնդ Բրաունը, ՄԱԿ-
ում ԱՄՆ-ի մշտական ներկայացուցիչ Էդլայ Ստիվեն-
սոնը և ուրիշներ։

Ինչպես հայտնի է արդարադատության մինիստր
38-ամյա Ռոբերտ Քենեդին արդեն հրաժարվել է վիցե-



պրեզիդենտի համար իր թեկնածությունն առաջադրե-
լուց։ Նրա մյուս եղբայրը՝ 31-ամյա Էդվարդ Քենեդին
ըստ երևույթին նորից կընտրվի սենատոր։ Հանգուցյալ
պրեզիդենտի այրին՝ 34-ամյա Ժակլին Քենեդին արդեն
տուն է գնել Վաշինգտոնում և ապրում է իր դստեր Կա-
րոլինայի ու Ջոն-կրտսերի հետ։ Իհարկե նա ակտիվ
դեր չի խաղա քաղաքականության մեջ, բայց խոսք է
գնում, որ նա կլինի Սպիտակ տան հատուկ խորհրդա-
կանը արվեստի հարցերով։

ԱՄՆ-ի ռեսպուբլիկական պարտիայից պրեզիդենտի
թեկնածուի ամենից ավելի ազդեցիկ թեկնածուները
երկուսն են. մեկը, դա Նյու-Յորքի նահանգապետ, մի-
լիարդատեր Նելսոն Ռոկֆելլերն է, մյուսը՝ սենատոր,
միլիոնատեր Բարրի Գոլդուոտերն է։ Նրանց միջև արդեն
կատաղի բնույթ է ստացել նախընտրական մրցավազքը։
Նրանք շրջագայում ու ելույթներ են ունենում երկրի
տարբեր նահանգներում։

Ամերիկյան 50 նահանգներում էլ Ռոկֆելլերն ունի
իր շտաբ—բնակարանը։ Ստեղծվել է հատուկ գիտահե-
տազոտական բյուրո, որն ուսումնասիրում է հասարա-
կության վերաբերմունքը Ռոկֆելլերի նախընտրական
կամպանիայի նկատմամբ։ Մասնագետների մեջ կան
նաև մարդիկ, որոնք զբաղվում են հավակնորդի արտա-
սանական խոսքի առոգանության լավացմամբ։

Հանդես գալով Վաշինգտոնի մամուլի ազգային ա-
կումբում Նելսոն Ռոկֆելլերը սուր քննադատության
ենթարկեց Լինդոն Ջոնսոնի ուղերձը, այն համարելով
խոստումների հավաքածու։ Պրեզիդենտի թեկնա-
ծության առաջադրման իր հավակնությունը նա բա-
ցատրեց այն բանով, որ անհանգստացած է ԱՄՆ-ի
և ազատության ապագայով։ Ռոկֆելլերի ելույթի հիմ-
նական ոգին ելնում է Մոնրոյի դոկտրինայից, Կուբա-
յում, Բեռլինում, Հարավ—Արևելյան Ասիայում և այլ
տեղերում իմպերիալիստական ագրեսիվ քաղաքակա-
նություն իրականացնելուց։

Ի՞նչ տարբերություն կա Ռոկֆելլերի և Գոլդուոտերի
հայացքների միջև։ Վերցնենք մի քանի կարևոր հարցեր։
Ռոկֆելլերը պաշտպանում է միջուկային փորձարկում-
ների մասնակի արգելման մասին համաձայնությունը,
Գոլդուոտերը դրան դեմ է։ Գոլդուոտերը գտնում է, որ
եթե ՉԺՌ-ն մտնի ՄԱԿ, ԱՄՆ-ը պետք է դուրս գան այդ
կազմակերպությունից։ Ռոկֆելլերը համաձայն չէ, որ

Չինաստանը մտնի ՄԱԿ, բայց չի էլ ցանկանում, որ այդ պատճառով ԱՄՆ-ը դուրս գա ՄԱԿ-ից։ Գոլդուոտերը գտնում է, որ անհրաժեշտ է խզել դիվանագիտական հարաբերությունները ՍՍՌՄ-ի հետ, եթե Մոսկվան չհամաձայնվի Արևելյան Եվրոպայում ամերիկյան պայմանների հետ։ Ռոկֆելլերը դեմ է հարաբերությունների խզմանը։

Սենատոր Բարրի Գոլդուոտերը սենատում դեմ է քվեարկել Մոսկովյան պայմանագրին և մերժում է նեգրերի վերաբերյալ քաղաքացիական իրավունքների օրինագիծը։ Պետք է ասել, որ ներկայումս Գոլդուոտերը ստիպված է պարել Ռոկֆելլերի զուռնայի տակ։ Այո, դա այդպես է. Գոլդուոտերին ֆինանսավորում են Տեխասի նավթային մագնատներն ու միլիոնատերերը։ Նրանք արդյունահանում են նավթ, իսկ նավթամուղներին ու նավթավերամշակման գործարաններին տիրում է Ռոկֆելլերը։ Եթե Տեխասի միլիոնատերերին անհրաժեշտ է լինում նավթ վաճառել, գնում են Ռոկֆելլերի մոտ, իսկ վերջինս էլ օգտագործում է այդ մոմենտը և թելադրում իր տնտեսական ու քաղաքական պայմանները։

Իհարկե «կատաղիների» լիդերը՝ Գոլդուոտերը ընդհանրապես քիչ շանսեր է ունեցել Սպիտակ տան ղեկավար դառնալու համար, իսկ Քեննեդիի սպանությունից հետո եղած շանսերն էլ ոչնչի հավասարվեցին։

Ներկայումս ռեսպուբլիկական պարտիայի լիդերները փնտրում են կոմպրոմիսային թեկնածություն։ Պրեզիդենտական ընտրությունների մարաթոնին մասնակցում է նաև Ռիչարդ Նիկսոնը, որը պարտություն կրեց 1960 թվականի ընտրություններում և 1962 թվականին էլ Կալիֆորնիայի նահանգապետի պոստի համար տեղի ունեցած ընտրություններում։ Այնուհետև ցուցակի մեջ մտնում են Հարավային Վիետնամում ամերիկյան դեսպան Հենրի Կեբոտ Լոջը, Պենսիլվանիայի նահանգապետ Ուիլյամ Սկրենտոնը, պաշտպանության Մինիստր Ռոբերտ Մակնամարան, Միչիգանի նահանգապետ Ջորջ Ռոմնին և ուրիշներ։

Պրեզիդենտական նախընտրական կամպանիային զուգընթաց ԱՄՆ-ում ծավալվում է նաև կոնգրեսի ընտրությունների կամպանիան։ Չէ՞, որ նոյեմբերի առաջին երեքշաբթի օրը ընտրվելու է սենատի 1/3-ը և ներկայացուցիչների պալատի ամբողջ կազմը։ Հիշեցնենք, որ



այժմ ներկայացուցիչների պալատի անդամների 37 տոկոսը և սենատորների քառորդը «կատաղիների» բանակում է։ Միակ սենսացիան այժմյան կամպանիայում այն է, որ տիեզերագնաց Ջոն Գլենը ձգտում է ընտրվել կոնգրեսի անդամ։ Ըստ երևույթին նա կոնգրեսի աթոռը ավելի շահութաբեր է համարում, քան տիեզերանավի խցիկը։

Ո՞վ է ամենից ուժեղ հավակնորդը Սպիտակ տան համար։ Այդպիսի հավանական թեկնածու Լինդոն Ջոնսոնն է։ Չէ՞ որ նա մոտ 30 տարի կոնգրեսում է, եղել է դեմոկրատական պարտիայի լիդերը սենատում և որ կարևորն է միլիոնավոր ընտրողների աչքում նա համարվում է Քեննեդիի քաղաքականության շարունակողը։

«Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը գրում է, որ հասարակական կարծիքի հարցումների արդյունքները ցույց են տալիս հետևյալը. Լինդոն Ջոնսոնը Գոլդուոտերի նկատմամբ ունի մեծ առավելություն։ Ներկայիս ընտրողների պայմանական ձայներով հարաբերականությունն է 75:20՝ հօգուտ Ջոնսոնի։ Այդ հարաբերակցությունը Ջոնսոնի և Նիկսոնի պայմանական ընտրողների մեջ կլինի 69:24՝ հօգուտ Ջոնսոնի։

Թերթը հաշվել է, որ ներկայումս դեմոկրատական և ռեսպուբլիկական պարտիաների նկատմամբ ընտրողների ձայների պայմանական հարաբերակցությունը կարելի է համարել 3:1՝ հօգուտ դեմոկրատների։

Ինչ վերաբերում է ամերիկյան ընտրողներին, ապա հիմնականում նրանք անտարբեր են ընտրությունների նկատմամբ։ Թե ով կնստի Սպիտակ տանը, դրանով չի փրկվի ամերիկյան ապրելակերպը։ Հիշենք, որ պրեզիդենտական անցած ընտրություններում ամերիկացիների 1/3-ը հրաժարվեց քվեարկելուց, իսկ կոնգրեսի անդամության թեկնածուների համար քվեարկեց ընտրողների միայն կեսը։

Ո՞վ կհաղթի ընտրություններում։ Այս հարցին կարելի է հետևյալ պատասխանը տալ. ինչպես անցած ընտրություններում, այնպես էլ գալիք ընտրություններում մրցակիցների բախտը կվճռի դոլարը, որն իր ուժով էլ Սպիտակ տուն կուղարկի նոր պրեզիդենտին։

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

## ՄԻԱՅՆ ՓԱՍՏԵՐ

ԱՄՆ-ում «Յուպիտեր» սիստեմի մեկ հրթիռ արտադրելու համար ծախսվում է մեկ միլիոն 200 հազար դոլար։ Այդ գումարով կարելի է կառուցել 60 բնակելի տուն։

Ամերիկյան սոցիոլոգ Դյուպեն գտնում է, որ եթե մեկ ջրածնային ռումբ պակաս լինի իրենց ռազմական պահեստներում, ապա հնարավոր կլինի գրքի ֆոնդը ԱՄՆ-ի գրադարաններում կրկնապատկել և եռապատկել։

Ամերիկյան Նյու-ինգլենդ լայֆ ինշուրենս ապահովագրական ընկերության տվյալներով ԱՄՆ-ի յուրաքանչյուր 100 երիտասարդներից, որոնք սկսում են ինքնուրույն կյանք վարել, տարբեր ժամանակներում 32-ը դառնում են մուրացկաններ, 16-ը չքավորներ, 32-ը ապրում են կարիքի մեջ և միայն մեկին է հաջողվում հարստանալ ու տարեկան ունենալ 10 հազար դոլարից բարձր եկամուտ։

ԱՄՆ-ի պաշտոնական տվյալներով 1962 թվականի վերջերին երկրի արդյունաբերական սարքավորումների մի զգալի մասը, որը ամեն տարի կարող էր տալ 30 միլիարդ դոլարի արտադրանք, անգործության է մատնված։ Չօգտագործվող սարքավորումների թիվն անընդհատ ավելանում է։

Ութը տարում (1955-1962թթ.) գները Ֆրանսիայում բարձրացել են 43 տոկոսով, Անգլիայում՝ 30, Ճապոնիայում՝ 28, Իտալիայում և Հնդկաստանում՝ 23 և այլն։

Վերջերս ամերիկյան էկոնոմիստները հրատարակել են «Աղքատությունը և զրկանքները ԱՄՆ-ում» խորագրով գրքույկ, որտեղ փաստեր են նշվել այն մասին, թե ինչպես ԱՄՆ-ում ներկայումս 77 միլիոն մարդիկ



ապրում են կարիքի մեջ և միայն 12 միլիոն մարդիկ ապրում են առատության պայմաններում։

ԱՄՆ-ում ձեռնարկատերերը ուշադրություն չեն դարձնում տեխնիկայի անվտանգության վրա, որի պատճառով միլիոնավոր մարդիկ աշխատանքի մեջ մահանում, վիրավորվում և խեղանդամ են դառնում։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ ԱՄՆ-ի գործարաններում, ֆաբրիկաներում, հանքահորերում և ընդհանրապես արտադրության մեջ զոհվածների ու վիրավորվածների մեկ տարվա թիվը գերազանցում է այն բոլոր պատերազմներում կրած կորուստներին, որոնց վերջին հարյուր տարում մասնակցել է ԱՄՆ-ը։

Ազգային հարստության 60 տոկոսը ԱՄՆ-ում և 50 տոկոսը Անգլիայում գտնվում է հարուստների մի փոքր խմբի ձեռքում, որոնք երկրում կազմում են բնակչության ընդամենը մեկ տոկոսը։

Երեք տարում ԱՄՆ-ի ձեռնարկություններում, դժբախտ դեպքերի հետևանքով, մահացել են 45 հազար և վիրավորվել 6 միլիոն բանվորներ։ Ամերիկյան հետազոտող Սոմերսը գրել է, որ ներկայումս յուրաքանչյուր 3 րոպեում ԱՄՆ-ի ձեռնարկություններում աշխատանքի ժամանակ մահանում կամ խեղանդամ է դառնում մեկ բանվոր։

Անգլիան 400 տարվա ընթացքում աշխարհի տարբեր մասերում մղել է 200 պատերազմ։ Այդ պատերազմների նպատակը եղել է միայն այն, որ ստրկացնի օտար ժողովուրդների և հափշտակի նրանց ունեցվածքը։

Ամեն տարի ԱՄՆ-ի մոնոպոլիստները Լատինական Ամերիկայի երկրներից հափշտակում են 950 միլիոն դոլար այսպես կոչված մաքուր շահույթ։ Միայն «Յունայտեդ ֆրուտ» ընկերությունը բանանի առևտրից տարեկան շահում է 100 միլիոն դոլար։

Ամեն օր Լատինական Ամերիկայի երկրներում սովից, հիվանդություններից և անժամանակ ծերությունից մահանում են 5,5 հազար մարդիկ։

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Բուլղարիայում, Յամբոլա քաղաքի մոտ, կառուցվում է արհեստական անձրև ստեղծող մեքենաների գործարան։ Գործարանը կթողարկի անձրևաբեր մեքենաներ, պոմպեր, հորատող մեքենաներ և դրանց անհրաժեշտ պահեստային մասեր։ Գործարանի արտադրանքը կբավարարի ոչ միայն Բուլղարիայի զարգացող գյուղատնտեսությանը, այլև կարտահանվի Տընտեսական փոխօգնության մեջ մտնող երկրները։*

### ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

*Ձեզանից շատերն են խանութից գնել թղթե տոպրակներով վաճառվող կաթ։ Իսկ մտածե՞լ եք, թե այդ փոխարինիչը որքան օգուտ է տալիս պետությանը։ Ապակե տարաները թղթով փոխարինելու շնորհիվ փակվում են տարաները ընդունող կետերը, այլևս չեն աշխատելու հսկա լվացող մեքենաները, իսկ թանկարժեք հումքը՝ ապակին գործարաններում կվերածվի ավելի արժեքավոր արտադրանքի։ Եվ այս բոլորից երկիրը կստանա 163 միլիոն ռուբլի (նոր փողով) օգուտ։*

### ՓՈՂ ՆԵՅԼՈՆԻՑ

*Աշխարհում առաջին թղթադրամները երևացին 1690 թվականին, բայց այժմ հարցականի տակ է դրված նրանց գոյության շարունակումը։ Թղթադրամը իր տեղը զիջելու է պլաստմասսային։*

*Թղթադրամը նեյլոնե դրամով փոխարինելու առաջարկը արել է ամերիկացի գիտնական Ստենլի Ռիդը։ Հայտնի է, որ թղթադրամը անդիմացկուն է, շուտ է պատռվում։ Դրա փոխարեն կարելի է օգտագործել թերթիկավոր նեյլոն։ Ռիդը մշակել է նեյլոնի վրա գրելու, օրնամենտներ ու նուրբ նկարներ և տարբեր գույներ տալու եղանակը։*

*Նեյլոնից փողերը կլինեն ավելի դիմացկուն և երկարակյաց, քան թղթինը։ Նեյլոնից փողերը կարելի է վստահել ավտոմատ մեքենաներին, որոնք կարող են մանրացնել, ընդունել և բաց թողնել ավանդները։ Այդպիսով մեքենան դուրս կմղի բանկի, խնայդրամարկղների և փոխանակման դրամարկղների գանձապահներին, կտա մեծ խնայողություն։*





## ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

### 1. ՍՄԿՊ-ի և մյուս մարքս-լենինյան պարտիաների պայքարը համաշխարհային կոմունիստական շարժման միասնության համար

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Միասնականության խախտման մասին, որը քողարկվում է միասնականության վերաբերյալ աղաղակներով, *Երկեր, հատոր 20, էջ 406—411, Հայպետհրատ, 1950։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, *Երկեր, հատոր 31, էջ 18—37, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը։

Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ.— Միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար ՍՄԿՊ-ի պայքարի մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի փետրվարյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 4-ի համարում։*

### 2. Սովետական Միությունը արաբական ժողովուրդների հավատարիմ բարեկամն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Ճառ Արաբական Միացյալ Ռեսպուբլիկայի ազգային ժողովի նիստում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մայիսի 12-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Հանուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության, *ելույթ Մոսկվայի ռադիոյով և հեռուստատեսությամբ, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մայիսի 28-ի համարում։*

Համատեղ հայտարարություն, ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովի և Արաբական Միացյալ Ռեսպուբլիկայի պրեզիդենտ Գամալ Աբդել Նասերի բանակցությունների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. մայիսի 26-ի համարում։*

### 3. Քիմիական արդյունաբերության զարգացումը մեր երկրում

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Քիմիական արդյունաբերության զարգաց-

ման խնդիրները առաջիկա 7 տարում, *ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան (1963 թ.) պլենումում տված զեկուցումից։*

Լինել մեծ քիմիայի զարգացման առաջավոր գծում, *ՀԿՊ Կենտկոմի պլենումի արդյունքները, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունվարի 29-ի և 30-ի համարներում։*

Մեծ քիմիան քայլում է Անդրկովկասում, *նյութեր քիմիայի զարգացման մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մայիսի 24-ի համարում։*

Ռ. ՇԱԽԿԱԼՅԱՆ.— Մեր ռեսպուբլիկայի մեծ քիմիան, *գրույց տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թվականի 9-րդ համարում։*

## 4. Ավելի արդյունավետ օգտագործել պարարտանյութերը

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ.— Կատարելագործել գյուղատնտեսության ղեկավարումը, ավելի լավ օգտագործել հանքային պարարտանյութերը և ոռոգելի հողերը, *ՀԿՊ XXIII համագումարում տված զեկուցումից, առանձին բրոշյուր, էջ 56—57, Հայպետհրատ, 1964։*

Մ. ՍԻՄՈՆՅԱՆ.— Ինչպես պարարտացնել գարնանացան ցորենի ցանքերը, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մայիսի 24-ի համարում։*

«Սովետական Հայաստան»-ի գյուղատնտեսական աշխատանքների ստուգման միամսյակ, *նյութեր գարնան գյուղատնտեսական աշխատանքների ընթացքի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մայիս ամսվա համարներում։*

## 5. Եկեղեցական տոների ռեակցիոն էությունը

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Կրոնական տոների և ծիսակատարությունների մասին «Պատասխաններ հավատացյալներին» *գրքից, էջ 252—258, Հայպետհրատ, 1963։*

Գիտական աթեիզմի հիմունքները, *առանձին գիրք, Հայպետհրատ, 1963։*

Ս. ԳԻՆՈՍՅԱՆ, Տ. ՄԱՐԳԱՐՅԱՆ.— Քրիստոնեական մի քանի տոների և ծեսերի մասին, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1959։*

---



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. ԻՎԱՆՈՎ, Ն. ՌԻԲԱԿՈՎԱ, Ի՞նչ է էթիկան, *Հայպետհրատ, 65 էջ, տպաքանակ 5000, գինը 5 կոպ.։*

*Ո՞րն է մարդու կյանքի իմաստն ու նպատակը։ Ինչպիսի՞ վարքագծի կանոններով պետք է ունենա մարդը։ Մարդկանց վարքագծում ի՞նչն ենք համարում բարոյական և ի՞նչը՝ ոչ բարոյական։ Ի՞նչ դեր է խաղում բարոյականությունը հասարակության զարգացման գործում։ Այս կարգի հարցերի պարզաբանմանը օգնում է էթիկան (բարոյագիտությունը)։ Այդ հետաքրքիր գիտության բովանդակության մասին էլ հենց խոսվում է սույն գրքույկում։*

*Հեղինակները, որոնք Լենինգրադի պետական համալսարանի մարքս-լենինյան էթիկայի և էսթետիկայի ամբիոնի դասախոսներ են, պատմում են, թե երբ է ծագել էթիկան, ինչպես է այն զարգացել, ինչպես է ընթացել մատերիալիզմի ու իդեալիզմի պայքարը էթիկայի բնագավառում։ Գլխավոր ուշադրությունը դարձվում է արդի պայմաններում այդ գիտության դերին՝ կոմունիստական բարոյականության սկզբունքների հիմնավորման ու պրոպագանդման, աշխատավորների բարոյական դաստիարակության, բուրժուական ռեակցիոն գաղափարախոսության դեմ մղվող պայքարում։*

*Գրքույկը նախատեսված է ընթերցողների լայն շրջանների համար։*

Գյուղատնտեսական տեխնիկա, *Տեղեկագիրք, Հայպետհրատ, 517 էջ, տպաքանակ 1500, գինը 84 կոպ.։*

*Տեղեկագրքում համառոտակի տրված է արտադրության մեջ գտնվող տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների, ինչպես նաև նորագույն այն մեքենաների կառուցվածքի նկարագիրը, որոնց պետական փորձարկումները տվել են լավ արդյունքներ և արտադրվելու են 1963 թվականի ընթացքում։*

*Գրքում ընդգրկված են 600 անուն զանազան մեքենաներ ու գործիքներ։ Տրված են նաև յուրաքանչյուր մեքենայի ու գործիքի նշանակությունը, տեխնիկական բնութագիրը, կառուցվածքը, գործադրման բնագավառը, արտադրող գործարանը։*

*Տեղեկագրքից հեշտությամբ օգտվելու համար բոլոր մեքենաներն ու գործիքները դասավորված են ըստ գյուղատնտեսության ճյուղերի։ Բացառություն են կազմում տրակտորները և ընդհանուր նշանակության մեքենաները, որոնք տրված են առանձին խմբով։*

*Գիրքը նախատեսված է գյուղատնտեսության բնագավառում աշխատող մեխանիզատորների, ինժեներների, բարձրագույն ուսումնական հաստատություններում ու տեխնիկումներում սովորողների համար։*

---

Ինդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 11

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*ՎՖ 08259* *Պատվեր 455* *Տիրաժ 9357*

*Հանձնված է արտադրության 28/V 1964 թ.:*
*Ստորագրված է տպագրության 4/VI 1964 թ.:*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8:*

*Գինը 8 կոպ.:*